Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք


Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ


# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 18 (96)


«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ 1940

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 18 (96)



«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ — 1940

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ-ՈՒՄ ՊՏՂԱԲՈՒԾՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ԽԱՂՈՂԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԸ ԶԱՐԳԱՑՆԵԼՈՒ ՁԵՌՆԱՐԿՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

## ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ ԵՎ ՀԱՄ. Կ(Բ)Պ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՍԵՊՏԵՄԲԵՐԻ 6-Ի ՈՐՈՇՈՒՄԸ

*ՍՍՌ Միության Ժողովրդական Կոմիսարների Սովետը և ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն նշում են, որ Հայկական ՍՍՌ-ն վերջին տարիներս մեծ հաջողություններ է ձեռք բերել գյուղատնտեսության ասպարեզում, հատկապես պտղաբուծության ու խաղողագործության և տեխնիկական կուլտուրաների զարգացման գործում:*

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1937 թ. սեպտեմբերի 8-ի դիրեկտիվները ճշտորեն կենսագործվելու հետևանքով, զգալիորեն ընդարձակվել է առաջատար գյուղատնտեսական կուլտուրաների տարածությունը, բարձրացել է նրանց բերքատվությունը և աճել է կոլխոզների եկամտաբերությունը:

Այս տարի խաղողի այգիների տարածությունը հասնելու է 19,2 հազար հեկտարի, որը, համեմատած 1937 թվականի սկզբին եղած տարածության հետ, կազմում է 177 տոկոս: Խաղողի այգիների բերքատվությունը 1936 թվականին մի հեկտարի տված 54 ցենտներից 1939 թվականին հասել է 76 ցենտների:

Պտղատու այգիների՝ դեղձի, ծիրանի և այլ այգիների տարածությունը հասել է 19,5 հազար հեկտարի, որը 1937 թվականի սկզբին եղած տարածության հետ համեմատած կազմում է 185 տոկոս: Պտղատու այգիների բերքատվությունը 1939 թվականին հասել էր 45 ցենտների՝ 1936 թվականի 36 ցենտների դիմաց:

Ծխախոտի ցանքերի տարածությունը հասել է 5 հազար հեկտարի, որը 1937 թվականի սկզբներին եղած տարածության հետ համեմատած կազմում է 208 տոկոս:



Ծխախոտի բերքատվությունը մի հեկտարից 1939 թվականին հասել է մինչև 8,2 ցենտների:

Զգալի հաջողություններ են ձեռք բերվել բամբակի բերքատվությունը բարձրացնելու գործում: Բամբակի բերքը 1939 թվականին կազմում էր 19,1 ցենտներ մեկ հեկտարից՝ 1936 թվականի 12 ցենտների դիմաց: Այդպիսով, երրորդ հնգամյակի պլանը բամբակի բերքատվության բնագավառում ժամկետից առաջ է կատարվել Հայկական ՍՍՌ-ում:

Կոլխոզների կազմակերպական-տնտեսական ամրացման, կոլխոզնիկների հարաճուն քաղաքական ակտիվության և բերքատվության բարձրացման հիման վրա, զգալիորեն աճել է կոլխոզնիկների ունևորությունը:

Կոլխոզների ընդհանուր եկամուտը վերջին չորս տարվա ընթացքում ավելացել է չորս անգամ և 1939 թվականին հասել 263 միլիոն ռուբլու՝ 1935 թվականին ստացված 60 միլիոն ռուբլու դիմաց: Կոլխոզային մեկ տնտեսությանն ընկնող դրամական եկամուտը վերջին չորս տարում ավելացել է միջին հաշվով համարյա 5 անգամ, իսկ տարեկան մեկ միլիոն ռուբլուց ավելի եկամուտ ստացող կոլխոզների թիվը, համե-

մատած 1937 թվականի հետ, ավելացել է 4,5 անգամ:

1938—1939 թվականների ընթացքում Հայկական ՍՍՌ-ում ոռոգելի հողերի տարածությունն ավելացել է 13,4 հազար հեկտարով: 1940 թվականին ավարտվում է 4 նոր ոռոգիչ և ցամաքեցուցիչ սիստեմների շինարարությունը, որը հիմնականում կատարվում է կոլխոզների ուժերով ու միջոցներով, կոլխոզներ, որոնք ավելացնում են նոր ոռոգելի հողերի տարածությունը 10 հազար հեկտարով:

Ոռոգելի տարածությունների ընդարձակելու և բերքատվությունը բարձրացնելու ասպարեզում, խաղողագործության, պտղաբուծության ու տեխնիկական կուլտուրաների զարգացման բնագավառում ձեռք բերված հաջողությունները պայմաններ են ստեղծում Հայկական ՍՍՌ-ում գյուղատնտեսության հետագա զարգացման ու վերելքի համար:

ՍՍՌ Միության Ժողկոմսովետը և Համ. Կ(բ)Պ Կենտկոմը հավանություն են տալիս ոռոգելի հողերի տարածությունը մանր և միջակ ջրանցքներ անցկացնելու միջոցով ընդարձակելու ձեռնարկումներին, որպես ամենից ավելի էֆեկտավոր և Հայաստանի



բնա-պատմական պայմաններին համապատասխանող ձեռնարկումներ (կտրված ռելյեֆ և քարքարոտ հողեր):

ՍՍՌ Միության Ժողովրդական Կոմիսարների Սովետը և ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն որոշում են.

Հավանություն տալ Հայկական ՍՍՌ կոլխոզների, կոլխոզնիկների, ղեկավար պարտիական ու սովետական օրգանների նախաձեռնությանը— ընդարձակել մինչև 1944 թվականի վերջը ոռոգելի հողերի տարածությունը 54 հազար հեկտարով, այդ թվում օգտագործելով 14 հազար հեկտար պառկած հողերը· 1941—1944 թվականների ժամանակաշրջանում հիմնել խաղողի նոր այգիներ 15 հազար հեկտար տարածությամբ և պտղատու այգիներ 20 հազար հեկտար տարածությամբ· մինչև 1944 թվականն ավելացնել բամբակի ցանքերի տարածությունը 4 հազար հեկտարով, ծխախոտինը՝ 5,5 հազար հեկտարով և շաքարի ճակնդեղինը 2,4 հազար հեկտարով· 1944 թվականին մի հեկտարի բերքատվությունը լրիվ պտղաբերության շրջանում հասցնել՝ խաղողինը 100 ցենտների, դեղձինը 60 ցենտների և ծիրանինը 100 ցենտների· բամբակի բերքատվությունը 1939 թվականի

19,1 ցենտներից բարձրացնել մինչև 1944 թվականը 24 ցենտների, հասցնելով բամբակի արտադրանքը 1944 թվականին մինչև 480 հազար ցենտների. ծխախոտի բերքատվությունը 1939 թվականի 8,2 ցենտներից 1944 թվականին բարձրացնել մինչև 9 ցենտների, հասցնելով արտադրանքը 1944 թվականին մինչև 94,5 հազար ցենտների. շաքարի ճակնդեղի բերքատվությունը 1939 թվականի 182 ցենտներից բարձրացնել 1944 թվականին մինչև 250 ցենտների, հասցնելով արտադրանքը 1944 թվականին մինչև մեկ միլիոն ցենտների:

Ժողտնտեսական այդ խնդիրներն իրագործելու համար, պարտավորեցնել Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմին՝ անցկացնել հետևյալ ձեռնարկումները.

## I. ՈՌՈԳՄԱՆ ԱՍՊԱՐԻԶՈՒՄ

1941—1944 թվականների ժամանակաշրջանում ձեռնարկումներ անցկացնել ջրային ապահովվածությունը բարելավելու և գոյություն ունեցող ոռոգիչ սիստեմների ջրօգտագործումը բարելավելու ուղղությամբ, 14 հազար հեկտար ներսիստեմային պա-



կած հողերն օգտագործելու և ոռոգիչ ու ցամաքեցուցիչ սիստեմներ կառուցելու ուղղությամբ, ստանալով 40 հազար հեկտար նոր ոռոգելի հողեր. այդ նպատակով՝

1. 1940—42 թվականներին Վաղարշապատի ու Զանգիբասարի շրջաններում իրականացնել Սարդարի Զանգուի ջրանցքի շինարարությունը՝ 5 հազար հեկտար նոր հողեր ոռոգելու և սակավաջուր Քասախի սիստեմի 4 հազար հեկտար հողերն այդ ջրանցքով ոռոգելու համար: Հիդրոտեխնիկական կառուցվածքների շինարարության ժամանակ նրանց մեջ պաշար նախատեսել Հոկտեմբերյան շրջանի հարավային մասի հողերի հնարավոր ոռոգման համար:

2. 1941—1943 թվականների ժամանակաշրջանում անցկացնել այնպիսի ձեռնարկումներ, որոնք ապահովեն Ղռերի ջրանցքին հարող 5,5 հազար հեկտար ոռոգելի տարածության ընդարձակումը Ղամարլուի և Վեդու շրջաններում:

3. 1941—1943 թվականների ընթացքում կատարել Եղվարդի ոռոգիչ ջրանցքի շինարարությունը՝ Աշտարակի շրջանի 6 հազար հեկտար հողերը ոռոգելու համար:

4. 1941—1942 թվականներին կառուցել Գառնու ջրանցքը՝ Գառնիչայ գետի ջրով

Կոտայքի շրջանի 1,5 հազար հեկտար հողերը ոռոգելու համար:

5. 1942—1944 թվականներին Արևմտյան Արփաչայի ակունքներում կառուցել մի ջրամբար և Արփաչայի ձախափնյա ջրանցքը՝ Դուզքենդի ու Ալինի շրջանների 4 հազար հեկտար հողը ոռոգելու նպատակով, գլխավորապես շաքարի ճակնդեղի համար:

6. Անցկացնել համապատասխան ձեռնարկումներ, որոնք ապահովեն 10 հազար հեկտար հողի լիակատար ու կայուն ոռոգումը Շիրակի ջրանցքի միջոցով:

7. 1942—1943 թվականներին իրականացնել Ուզունլարի ջրանցքի շինարարությունը՝ Ալավերդու շրջանի 4 հազար հեկտար հողերը ոռոգելու համար:

8. 1941—1942 թվականներին կատարել Լամբալուի ջրանցքի շինարարությունը՝ Դեբեդ գետի միջոցով Նոյեմբերյան շրջանի 2 հազար հեկտար հողերը ոռոգելու համար:

9. 1942 թվականին կառուցել Ախամանի ջրանցքը՝ Մարտունու շրջանում 1,3 հազար հեկտար նոր հողեր ոռոգելու համար:

10. 1941—1943 թվականներին կառուցել Նորքի ջրանցքը՝ Երևան քաղաքի շրջանում



2 հազար հեկտար նոր հողեր ոռոգելու համար:

11. 1941—1944 թվականների ժամանակաշրջանում բամբակագործական գոտում 6 հազար հեկտար տարածության վրա կատարել ցամաքեցման աշխատանքներ, կառուցելով կալիֆորնյան ջրհորներ և գործադրելով ցամաքեցման այլ միջոցներ:

12. 1941 թվականին երկարացնել Ղամարլուի կոլեկտորը, հասցնելով այն Վեդու շրջանի տերիտորիայի վրա՝ ոռոգելի հողերը 500 հեկտար տարածությամբ ավելացնելու համար:

13. 1942—1943 թվականների ժամանակաշրջանում կատարել Դվինի ջրանցքի շինարարությունը՝ Ղամարլուի շրջանում 1,7 հազար հեկտար հող ոռոգելու համար:

14. Հաստատել 1940—1944 թվականների ժամանակաշրջանում ոռոգիչ շինարարության վրա կատարվելիք ծախսերի ընդհանուր ծավալը 114,1 միլիոն ռուբլու գումարով: Այդ գումարից 59,9 միլիոն ռուբլին ընդունել ՍՍՌՄ պետական բյուջեի հաշվին և 54,2 միլիոն ռուբլին՝ Հայկական ՍՍՌ կոլխոզների հաշվին, հետևյալ կերպ բաշխելով ըստ տարիների.

| Տարիներ | Ընդամենը (միլիոն ռուբլի) | Այդ թվում ՍՍՌՄ բյուջեի հաշվին | Այդ թվում կոլխոզների միջոցներով |
|---|---|---|---|
| 1940 թվականին . . . . | 2,0 | 1,0 ՍՍՌՄ Ժողկոմսովետի պահեստի ֆոնդի հաշվին | 1,0 |
| 1941 թվականին . . . . | 25,0 | 13,0 | 12,0 |
| 1942 թվականին . . . . | 30,7 | 16,7 | 14,0 |
| 1943 թվականին . . . . | 31,0 | 16,5 | 14,5 |
| 1944 թվականին . . . . | 25,4 | 12,7 | 12,7 |
| Ընդամենը . . . | 114,1 | 59,9 | 54,2 |



15. Ոռոգման աշխատանքների համար ընդունված ծավալի համաձայն, պարտավորեցնել ՍՍՌՄ Պետպլանին՝ 1940—1944 թվականների համար Հայկական ՍՍՌ-ին հատկացնել 26,5 հազար տոննա ցեմենտ, 16 հազար խորանարդ մետր փայտեղեն և 1,7 հազ. տոննա երկաթեղեն, հետևյալ կերպ բաշխելով ըստ տարիների.

| Տարիներ | Ցեմենտ (հազ. տոննա) | Անտառանյութ (հազ. խոր. մետր) | Երկաթեղեն (տոննա) |
|---|---|---|---|
| 1940 թվականին . . . . | — | 1,0 | 20 |
| Դրանցից 3-րդ եռամսյակում, Տնտսովետի ռեզերվից . . . . | — | 0,5 | 10 |
| 1941 թվականին . . . . | 7,5 | 3,3 | 400 |
| 1942 թվականին . . . . | 8,5 | 4,5 | 500 |
| 1943 թվականին . . . . | 6,4 | 4,2 | 480 |
| 1944 թվականին . . . . | 4,1 | 3,0 | 300 |

Առաջարկել Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին՝ ապահովել ոռոգիչ շինարարության մեջ տեղական շինանյութերի (պղլուսի, հիդրավլիկ կրի, կրա–պուցցոլանային ցեմենտի և այլ նյութերի) լայն գործադրությունը:

16. Հանձնարարել ՍՍՌՄ Պետպլանին և ՍՍՌՄ Հողժողկոմատին՝ բացի վերոհիշյալ հիմնական շինանյութերից, Հայկական ՍՍՌ ոռոգիչ շինարարությունն ապահովել անհրաժեշտ շինանյութերով, սարքավորմամբ ու տրանսպորտով— Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետի տարեկան ու եռամսյակային հայտերի համաձայն, ինչպես նաև տարեկան պլաններում նախատեսել հատուկ ապրեղատների հատկացումը կալիֆորնյան ջրհորների միջոցով ճահիճների չորացման աշխատանքներ կատարելու համար:

17. Հանձնարարել ՍՍՌՄ Հողժողկոմատին, Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետի հետ միասին, ձեռնարկումներ մշակել Թալինի ձմեռային արոտատեղերը ջրով ապահովելու ուղղությամբ և մինչև 1940 թ. հոկտեմբերի 1-ը ներկայացնել այդ ձեռնարկումները ՍՍՌՄ Ժողկոմսովետին կից Տնտեսովետի քննությանը:

18. Պարտավորեցնել ՍՍՌՄ Հողժողկո–



մատին՝ 1941—1942 թվականներին նախագծային–հետախուզական աշխատանքներ կատարել Ղուշչիի ջրամբարը կառուցելու ուղղությամբ՝ 3.500 հեկտար նոր հողեր ոռոգելու և 3.500 հեկտար հող ոռոգելու համար գոյություն ունեցող ցանցը ջրով ապահովելու նպատակով:

19. Հատկացնել Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին 1941 թ. հունվար—փետրվար ամիսներին աշխատանքներն սկսելու համար 5 կոմպրեսոր, 2.000 մետր շպունտ և 20 պնեվմատիկ մուրճ:

20. Պարտավորեցնել ՍՍՌՄ Հողժողկոմատին՝ 1941 և 1942 թվականներին Հայկական ՍՍՌ–ում աշխատելու համար ուղարկել 10 ինժեներ–երրիգատոր՝ տարեկան —ական հոգի:

21. Ռեսպուբլիկայի հողային ու ջրային օրգանների աշխատանքը բարելավելու և ծրագրված ոռոգիչ շինարարությունը ժամանակին կատարելու համար անհրաժեշտ պայմաններ ստեղծելու, գոյություն ունեցող ոռոգիչ ու ցամաքեցուցիչ սիստեմները վերակառուցելու և դրանց ճիշտ շահագործումը կազմակերպելու նպատակով, Հայկական ՍՍՌ–ում ստեղծել ջրային տնտեսության ռեսպուբլիկային ժողկոմատ, են–

թարկելով վերջինս Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին և ՍՍՌՄ Հողժողկոմատին:

22. Ոռոգիչ շինարարության բոլոր օբյեկտների կառուցումն անմիջականորեն ղեկավարելու գործը և նախագծերի ու նախահաշիվների հաստատումը հանձնարարել Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմին: Պարտավորեցնել ՍՍՌՄ Հողժողկոմատին՝ անհրաժեշտ օգնություն ցույց տալ շինարարությունն անցկացնելու, նախագծերն ու նախահաշիվները կազմելու և հաստատելու բնագավառում:

23. Հանձնարարել ՍՍՌՄ էլեկտրոկայանների Ժողկոմատին՝ արագացնել Քանաքեռգեսի դերիվացիոն ջրանցքի թողունակությունն ավելացնելու հարցերի լուծումը և Արզնիգեսի դերիվացիոն ջրանցքի կառուցման ժամկետների սահմանումը, որոնք կապված են 37 հազար հեկտար տարածության վրա Վերին Զանգուի, Եղվարդի և Կոտայքի ջրանցքներն անցկացնելու հետ:

## II. ԽԱՂՈՂԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԱՍՊԱՐԻԶՈՒՄ

1. Հայկական ՍՍՌ-ում մինչև 1944 թվականի վերջերը խաղողի այգիների տարածությունը հասցնել 34,2 հազար հեկտա-



րի. այդ նպատակով 1941—44 թվականների ժամանակաշրջանում խաղողի նոր այգիներ հիմնել 15 հազար հեկտար տարածության վրա, բաշխելով ըստ տարիների հետևյալ կերպ.

1941 թվականին— 3,2 հազ. հեկտ.
1942 թվականին— 4,0 հազ. հեկտ.
1943 թվականին— 4,5 հազ. հեկտ.
1944 թվականին— 3,3 հազ. հեկտ.

2. 1944 թվականին ապահովել առնվազն 100 ցենտներ բերք՝ լրիվ պտղաբերող խաղողի այգիների մի հեկտարից:

3. Հիմնել նոր խաղողի այգիներ եվրոպական և տեղական բարձրորակ այն սորտերով, որոնք սահմանված են ՍՍՌՄ Ժողկոմսովետին կից Տնտսովետի 1939 թվականի նոյեմբերի 16-ի որոշմամբ (մուսկատներ, ռկայ, քիշմիշ, ռկյարի, խարջի և այլն):

4. Խաղողի այգիների հիմնումը եվրոպական սորտերի տնկանյութով ապահովելու նպատակով, պարտավորեցնել ՍՍՌՄ Սննդարդժողկոմատին՝ Հայկական ՍՍՌ-ին 1940 թ. աշնան—1944 թ. գարնան ժամանակաշրջանում հատկացնել դեֆիցիտային սորտերի 1[illegible],2 միլիոն ծառեր Ղրիմի ԱՍՍՌ-ից:

5. Պարտավորեցնել Հայկական ՍՍՌ ժողկոմսովետին՝

ա) Ընդարձակել խաղողի տնկարանները այն հաշվով, որ տնկանյութ բաց թողնող հողամասերը հասնեն հետևյալ չափի (ըստ տարիների, հեկտարներով).

| 1941 թ. | 1942 թ. | 1943 թ. | 1944 թ. |
|---|---|---|---|
| 260 | 310 | 285 | 250 |

Ֆիլոքսերիայով վարակված շրջաններում 1941—1942 թվականներին հիմնել ամերիկյան մատների բուծարաններ 50 հեկտար տարածությամբ:

բ) Խաղողի դեֆիցիտային սորտերի բազմացումն արագացնելու նպատակով, 1940—1942 թվականներին կոլխոզներում ու սովխոզներում կառուցել 30 ջերմոց՝ յուրաքանչյուրը մեկ ցիկլում 25 հազար մատ բաց թողնելու կարողությամբ:

6. Խաղողի պատվաստած տնկիներ ձեռք բերելու համար կոլխոզներին տրվող վարկը հասցնել 80 կոպեկի և արմատակալած տնկիների համար՝ 35 կոպեկի մեկ հատին:

7. Նոր յուրացվող ծանր, քարքարոտ հողերում այգի հիմնելու և խնամելու ձեռնարկումների համար սահմանել երկարաժամկետ վարկավորման հետևյալ նորմաները մեկ հեկտարին.



| | Գոյություն ունեցող կոլխոզների համար | Վերաբնակ տնտեսություններից կազմակերպվող կոլխոզների համար |
|---|---|---|
| ա) հողի մեքենայացված մշակմամբ այգի հիմնելու համար . | 2500 ռ. | 3200 ռ. |
| բ) քարքարոտ հողամասերում պայթեցմամբ կատարված պլանտաժով այգի հիմնելու համար . . . . . . . . . . | 11000 ռ. | 11000 ռ. |
| գ) 2-րդ տարվա խնամքի համար | 300 ռ. | 800 ռ. |
| դ) 3-րդ տարվա խնամքի համար | 400 ռ. | 1000 ռ. |

Կոլխոզային խաղողի տնկարանների հիմնումը և խաղողի տնկիներ աճեցնելու համար ջերմոցների կառուցումը վարկավորել դրամական ծախսերի լիակատար արժեքի չափով:

## III. ՊՏՂԱՏՈՒ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԱՍՊԱՐԻԶՈՒՄ

1. Հայկական ՍՍՌ-ում մինչև 1944 թվականի վերջերը պտղատու այգիների տարածությունը հասցնել 39,5 հազար հեկտարի:

2. Այդ պլանի կատարումն ապահովելու համար, 1941—1944 թվականներին պտղատու նոր այգիներ հիմնել 20 հազար հեկտար տարածության վրա, բաշխելով ըստ տարիների հետևյալ կերպ՝

| | | | |
|---|---|---|---|
| 1941 թ. | 3,5 | հազ. | հեկտ. |
| 1942 » | 6,0 | » | » |
| 1943 » | 6,0 | » | » |
| 1944 » | 4,5 | » | » |

Այդ թվում՝



| | | |
|---|---|---|
| դեղձ՝ | 4·280 | հեկտ. |
| ծիրան՝ | 2·400 | » |
| տանձ՝ | 3·820 | » |
| խնձոր՝ | 3·640 | » |
| ընկույզ՝ | 406 | » |

Պտղատու նոր այգիներ հիմնել ստուգված լավագույն արդյունաբերական սորտերով. լեռնային շրջաններում լայնորեն արմատացնել տանձերի ու խնձորների միչուրինյան այն սորտերը, որոնք ստուգված են արտադրական փորձով:

3. Պտղատու այգիները հիմնելու և դրանք խնամելու ձեռնարկումների համար սահմանել երկարատև վարկավորում հետևյալ չափերով մեկ հեկտարի համար՝

| | Վերաբնակ տնտեսություններից կազմակերպվող կոլխոզների համար | Մյուս կոլխոզների համար |
|---|---|---|
| Կորիզավոր պտուղների այգի հիմնելու համար . . . . . . . . . . . . . | 1500 ռ. | 700 ռ. |
| Սերմնավոր պտուղների այգի հիմնելու համար . . . . . . . . . . . . . | 1000 ռ. | 400 ռ. |
| Պտղատու այգիներն առաջին տարին խնամելու համար . . . . . . . . . | 500 ռ. | — |
| Երկրորդ տարին պտղատու այգիները խնամելու համար . . . . . . . . . | 700 ռ. | — |
| Պտղատու տնկարաններ հիմնելու համար . . . . . . . . . . . . . | — | 3000 ռ. |



4. 1941—1944 թվականներին կոլխոզներում պտղատու այգիներ հիմնելը ժամանակին տնկանյութով ապահովելու նպատակով, 1940 թվականի աշնանից կազմակերպել կոլխոզային պտղատու տնկարանների ցանց այն հաշվով, որ յուրաքանչյուր շրջան ապահովվի սեփական տնկանյութով:

Վայրաքների հողամասեր հիմնելու տարեկան պլանը սահմանել հետևյալ չափերով՝ 1941 թվականին 95 հեկտար, 1942 թվականին 100 հեկտար և 1943 թվականին 100 հեկտար:

## IV. ԲԱՄԲԱԿԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԱՍՊԱՐԻԶՈՒՄ

1943 թվականին բամբակի ցանքերի տարածությունը հասցնել 20 հազար հեկտարի, բաշխելով ըստ տարիների հետևյալ կերպ.

1941 թվականին— 17,1 հազ. հեկտ.
1942 թվականին— 18,5 հազ. հեկտ.
1943 թվականին— 20,0 հազ. հեկտ.

## V. ԾԽԱԽՈՏԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԱՍՊԱՐԻԶՈՒՄ

1944 թվականին ծխախոտ տնկելու պլանը հասցնել 10,5 հազ. հեկտարի, բաշխելով ըստ տարիների հետևյալ կերպ՝

1941 թվականին— 6,7 հազ. հեկտ.
1942 թվականին— 8,7 հազ. հեկտ.
1943 թվականին— 9,7 հազ. հեկտ.
1944 թվականին—10,5 հազ. հեկտ.

Որպես ծխախոտի հիմնական արդյունաբերական սորտեր սահմանել «Սամսուն» և «Տրապիզոն» սորտերը:

## VI. ՇԱՔԱՐԻ ՃԱԿՆԴԵՂԻ ԱՍՊԱՐԻԶՈՒՄ

1944 թվականին շաքարի ճակնդեղի ցանքերի տարածությունը հասցնել 4 հազար հեկտարի, բաշխելով ըստ տարիների հետևյալ կերպ՝

1941 թվականին— 2,21 հազ. հեկտ.
1942 թվականին— 2,48 հազ. հեկտ.
1943 թվականին— 2,68 հազ. հեկտ.
1944 թվականին— 4,00 հազ. հեկտ.

## VII. ԱԳՐՈՏԵԽՆԻԿԱՅԻ ԵՎ ՄԵԽԱՆԻԶԱՑԻԱՅԻ ԱՍՊԱՐԻԶՈՒՄ

1. Սահմանել, որ պտղատու այգիների և խաղողի այգիների հիմնումը պետք է կատարվի ժամանակին նախապատրաստված հողամասերում և միայն ստանդարտային տնկանյութով: Այդ նպատակով տնկարան-



ներից տնկիները բաց թողնել սահմանված ստանդարտին խստիվ համապատասխան և անպայման տալով սորտային որակական վկայականներ և կարանտինային սերտիֆիկատներ:

2. 1944 թվականին հիմնել պաշտպանական ծառաշերտեր, որոնք ապահովեն պտղատու կուլտուրաների պաշտպանումը քամուց: Այդ նպատակով 1940 թվականի աշնանից կազմակերպել համապատասխան ծառերի տնկանյութի արտադրությունը, բաց թողնվող տնկիների քանակը հասցնելով տարեկան 3 միլիոնի:

3. ՍՍՌՄ Սննդարդժողկոմատին՝ Հայկական ՍՍՌ խաղողի այգիների համար առանձնացնել 380 տոննա շպալերային մետաղալար 1940 թվի երրորդ եռամսյակում, և 720 տոննա՝ 1941 թվականին:

4. Պտղատու այգիների բերքատվությունը բարձրացնելու հողի ստրուկտուրան բարելավելու նպատակով, պարտավորեցնել Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին՝ այգիներում լայնորեն արմատավորել առվույտի և սիդերացիոն կուլտուրաների ցանքերը, դրա համար կազմակերպելով այդ կուլտուրաների սերմնաբուծությունն այն հաշվով, որ 1942 թվից սկսած լիովին ապահովվի

դրանց սերմերի պահանջը։

5. Պտղաբուծական անտեսության հետագա ամրապնդման ուղղությամբ ձեռնարկումներ մշակելու նպատակով 1941—1942 թվականներին Հայկական ՍՍՌ կոլխոզներում անցկացնել պտղատու այգիների լրիվ պասպորտիզացիա։

6. Հանձնարարել Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին՝ մինչև 1942 թվի վերջն ապահովել խաղողի և պտղատու այգիների նորոգումը։

7. Մինչև 1944 թիվը կոմպլեքսային մեխանիզացիան բամբակագործության, ցրտահերկի և գարնանավարի գծով հասցնել 95 տոկոսի, ցանքի և կուլտիվացիայի գծով՝ 90 տոկոսի. ապահովել բամբակի ցանքերի ընդհանուր տարածության մինչև 50 տոկոսի խաչաձև կուլտիվացիան։

8. Մինչև 1943 թիվը բամբակի ցանքերի ամբողջ տարածության վրա յուրացնել ակոսա-խողովակային ջրումը։

9. Բամբակենու մեխանիզացիայի ենթարկված մշակումն ապահովելու նպատակով, մինչև 1944 թիվն ավարտել ջրելու քարտեզների խոշորացումն ու պլանավորումը, ոռոգիչ մանր ցանցի վերակառուցումն ու կարգավորումը։



10. 1944 թվին ավարտել բամբակա-առվույտային ցանքաշրջանառությունների կիրառումը Հայկական ՍՍՌ բոլոր բամբակագործական կոլխոզներում, հետևյալ ընդգրկմամբ՝ ըստ տարիների.

1941 թվին— կոլխոզների 30 տոկոսը.
1942 թվին— կոլխոզների 60 տոկոսը.
1943 թվին— կոլխոզների 80 տոկոսը.
1944 թվին— կոլխոզների 100 տոկոսը.

11. Ապահովել բամբակի ամբողջ սերմֆոնդի կենտրոնացված ախտահանումը գոմմոզայից, որի համար հանձնարարել ՍՍՌՄ Տեքստիլ արդյունաբերության ժողկոմատին՝ 1940 թվի աշնանը Երևանի բամբակազտիչ գործարանին կից կառուցել ախտահանման ցեխ և լրիվին ապահովել բամբակի սերմերի ախտահանումը ցանքի համար՝ 1941 թվից սկսած։

12. Ծխախոտի տեխնիկապես հասունացած տերևների հավաքումը ցանքերի ամբողջ տարածության վրա ժամանակին ապահովելու և կորուստները կանխելու նպատակով, 1941—1944 թվականների ժամանակաշրջանում կատարել նոր շինարարություն, հետևյալ բաշխմամբ ըստ տարիների.

| | 1941 թ. | 1942 թ. | 1943 թ. | 1944 թ. | Ընդամենը |
|---|---|---|---|---|---|
| ա) արևաչորանոցներ (աչք) . . | 1165 | 1345 | 800 | 690 | 4000 |
| բ) կրակաչորանոցներ (օբյեկտներ) . . . . . . . . . . | 53 | 64 | 22 | 11 | 150 |
| գ) տեսակավորման-հակավորման շենքեր (օբյեկտներ) . . . . | 42 | 50 | 70 | 68 | 230 |
| դ) չորացման շրջանակներ (հազարներով) . . . . . . . | 39,5 | 48,3 | 31,7 | 30,5 | 150,0 |
| ե) ջերմոցային շրջանակներ 1×2 ք. մ. (հազարներով) . . . . | 33,2 | 41,0 | 26,3 | 24,5 | 125,0 |



13. ՍՍՌՄ Պետպլանին՝ ծխախոտագործական կառուցումների շինարարության համար առանձնացնել շինանյութերի հետևյալ ֆոնդերը, ինչպես նաև բեռնատար ավտոմոբիլներ, ծխախոտագործական կոլխոզների համար.

| | 1941—44 թ. թ. ընթացքում | Այդ թվում 1941 թվականին |
|---|---|---|
| Տախտակեղեն (հազ. խոր. մետր) | 32,0 | 10,0 |
| Գերաններ (հազ. խոր. մետր) . . | 62,0 | 16,0 |
| Մեխ (տոննաներով) . . . . . . | 312 | 85 |
| Տեսակավոր երկաթ (տոննաներով) . . . . . . . . . . . . | 77 | 26 |
| Ծածկի թիթեղ (տոննաներով) . | 91 | 43 |
| Թիթեղ (տոննաներով) . . . . | 26 | 16 |
| Ապակի (հազ. քառ. մետր) . . . | 238 | 64 |
| Բեռնատար ավտոմոբիլներ՝ ծխախոտագործական կոլխոզների համար (հատ) . . . . . . . | 250 | 30 |

մեջ նախատեսել 1941—44 թվականների ժամանակաշրջանում Հայկական ՍՍՌ-ին սարքավորման և նյութերի անհրաժեշտ ֆոնդեր հատկացնելը, ապարատուրայի արտադրության համար:

21. ՍՍՌՄ Հողժողկոմատին՝ 1941 թվի առաջին կիսամյակում Հայկական ՍՍՌ-ին հատկացնել 5 հազար մետր շլանգ գյուղատնտեսության վնասատուների դեմ պայքարելու համար և 1 հազար հատ փուքս՝ փոշոտիչների համար:

22. Պարտավորեցնել ՍՍՌՄ Հողժողկոմատին՝ 1941 թվին Հայկական ՍՍՌ համար առանձնացնել «Վուլկան» տրակտորային սրսկիչներ 10 հատ, «О—У—3» տրակտորային սրսկիչներ՝ 15 հատ, «Զարյա» ձիաքարշ սրսկիչներ՝ 30 հատ, ձիաքարշ փոշոտիչներ՝ 30 հատ «Պիոներ» ձիա-մոտորային սրսկիչներ՝ 10 հատ, լավագույն որակի ձեռքի փոշոտիչներ՝ 2 հազար հատ և «Տրեմասս» ձեռքի սրսկիչներ՝ 2 հազար հատ:

23. Դաշտային աշխատանքների մեխանիզացիան ուժեղացնելու, պտղատու ու խաղողի այգիների տնկման համար հողերը նախապատրաստելու և այդ այգիների մշ-



շակման համար, պարտավորեցնել ՍՍՌՄ Հողժողկոմատին.

ա) 1941 թվին կազմակերպել երկու նոր պտղա-խաղողագործական ՄՏԿ-ներ՝ Հայկական ՍՍՌ Վեդու և Հոկտեմբերյանի րջաններում (այդ թվում մեկ գոյություն ունեցող բամբակագործական ՄՏԿ-ի ապա-ոշորացման հաշվին) և մեկ ճակնդեղա-ործական ՄՏԿ— Դյուզքենդի շրջանում՝ ոյություն ունեցող ՄՏԿ-ի ապախոշորաց-ան հաշվին:

բ) 1941—42 թվականներին կառուցել րակտորների և գյուղատնտեսական մեքե-աների կապիտալ նորոգման գործարան:

գ) նոր կազմակերպվող և գոյություն նեցող պտղա-խաղողագործական ՄՏԿ-րի համար 1941 թվին Հայկական ՍՍՌ րմուծել 26 հատ «ՉՏԶ» դիզելային ակտոր, 19 հատ «ՍՏԶ—ՆԱՏԻ» տրակ-ր, 50 հատ պլանտաժային գութան, 100 տ ձիաքարշ գութան, 50 կուլտիվատոր 50 գութան՝ շարամեջ մշակության հա-ր:

24. ՄՏԿ-ների և ջրտնտեսությունների խատողների կուլտուր-կենցաղային պայ-

մանները բարելավելու նպատակով 1941—42 թվականներին Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին քաղաքացիական շինարարության համար բաց թողնել 2 միլիոն ռուբլի, ըստ տարիների հավասար մասերով:

## VIII. ՁԵՌՆԱՐԿՈՒՄՆԵՐ ՎԵՐԱԲՆԱԿԵՑՄԱՆ ԳԾՈՎ

1. Նոր ոռոգվող և ցամաքեցվող այն հողերի յուրացման նպատակով, որոնք այս որոշմամբ նախատեսվում են բամբակի ցանքերի, պտղատու այգիների և տեխնիկական կուլտուրաների համար Հայկական ՍՍՌ-ում կատարել 9.765 տնտեսությունների ներռեսպուբլիկական վերաբնակեցում լեռնային շրջանների այն կոլխոզներից, որոնք ունեն ավելորդ բանվորական ուժ:

2. Վերաբնակեցման պլանը, ֆինանսավորման ծավալը և շինանյութերի ներմուծումը վերաբնակեցվող տնտեսությունների տեղավորման համար, հաստատել հետևյալ չափով (ըստ ՍՍՌ Միության Ժողկոմսովետին կից Վերաբնակեցման Վարչության ֆոնդերի):



| Թվականներ | Վերաբնակեցվող տնտեսությունների թիվը | Դրամական միջոցներ (հազ. ռուբ.) | |
|---|---|---|---|
| | | Պետբյուջե | Գյուղատնտեսական վարկ |
| 1940 թ. . . | 1.350 | 160,0 | 13.847,0 |
| 1941 թ. . . | 2.200 | 550,0 | 28.346,0 |
| 1942 թ. . . | 2.300 | 575,0 | 25.751,0 |
| 1943 թ. . . | 2.000 | 500,0 | 23.085,0 |
| 1944 թ. . . | 1.915 | 478,0 | 21.745,0 |
| Ընդամենը . | 9.765 | 2.263,0 | 107.774,0 |

Շինարարական նյութեր

| Թվականներ | Անտառանյութ (հազ. խոր. մետր) | Մեխ (տոննա) | Ցեմենտ (տոննա) | Շիֆեր (հազ. սալ.) | Երկաթ (տոննա) |
|---|---|---|---|---|---|
| 1940 թ. . . | 16,8 | 60,0 | 100,0 | — | 18,0 |
| 1941 թ. . . | 47,7 | 17,4 | 69,0 | 29,3 | 36,8 |
| 1942 թ. . . | 49.83 | 51,2 | 115,1 | 70,0 | 41.4 |

Առաջարկել ՍՍՌՄ Պետպլանին և ՍՍՌ Միության Ժողկոմսովետին կից Վերաբնակեցման Վարչությանը՝ 1943—1944 թվականներին ապահովել շինանյութերի ժամանակին մատակարարումը Հայկական ՍՍՌ-ում վերաբնակվողների տեղավորման համար, ըստ Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետի տարեկան հայտերի։

3․ Հայկական ՍՍՌ նոր ոռոգվող ու ցամաքեցվող հողերում վերաբնակություն հաստատող կոլխոզնիկների վրա տարածել «Գյուղատնտեսական վերաբնակեցման գըծով տրվող արտոնությունների մասին» ՍՍՌ Միության Կենտգործկոմի և Ժողկոմսովետի 1937 թվի նոյեմբերի 17-ի որոշման 1, 2, 9, 11, 12, 14, 15, 17 և 18 «ա», «բ», «գ» կետերով սահմանված արտոնությունները։

4․ Հայկական ՍՍՌ վերաբնակված կոլխոզներին բնակարանային, տնտեսական և կուլտուր-կենցաղային շինարարության նպատակով տրված գյուղատնտեսական վարկի մարման ժամկետ սահմանել 10 տարի, այն մարելով հավասար մասերով, սկսած վարկն ստանալուց հետո 5-րդ տարվանից։

5․ Առաջարկել Հայկական ՍՍՌ Ժողկոմ-



սովետին՝ վերաբնակեցումը կազմակերպելու և նոր վայրերում վերաբնակվածների տնտեսական տեղավորման ժամանակ ղեկավարվել ՍՍՌ Միության Ժողկոմսովետին կից Տնտեսական Խորհրդի 1940 թվի մայիսի 28-ի № 856 որոշմամբ և «ՍՍՌՄ արևելյան շրջանները կատարվող վերաբնակեցման պլանն ապահովելու ձեռնարկումների մասին» ՍՍՌ Միության Ժողկոմսովետի ու ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1940 թվի հունիսի 4-ի № 944 որոշմամբ, և վերաբնակեցումը կազմակերպել հետևյալ սկզբունքներով․

ա) լեռնային շրջանների կոլխոզներից վերաբնակեցումը պետք է կատարվի իրենց իսկ՝ կոլխոզների կողմից տնտեսությունների այն մասի (խմբերի) կազմակերպված առանձնացման միջոցով, որոնք համաձայնություն են հայտնել վերաբնակվելու․

բ) վերաբնակեցվող տնտեսությունները գլխավորվում են կոլխոզի ղեկավար աշխատողների կողմից (նախագահ, նախագահի տեղակալ, բրիգադիր, դաշտավար)․

գ) այն կոլխոզը, որը տնտեսությունների մի մասն առանձնացնում է վերաբնակեցման համար, վերջիններիս է հանձնում

նրանց հասանելիք արտադրության հիմնական միջոցները, նատուրալ ֆոնդերը, կապիտալ ներդրումների միջոցները (այդ թվում նաև անբաժանելի) և այլ ֆոնդերը.

դ) բնակեցման վայրերն ուղարկել վերաբնակվող կոլխոզնիկների ընտանիքների աշխատունակ անդամներին՝ իրենց տնտեսության տեղավորմանն անձամբ մասնակցելու համար, որից հետո միայն թույլատրել տնտեսության լիկվիդացիան հին տեղում և ընտանիքի մնացած անդամների տեղափոխվելը բնակման վայրը:

Շինանյութերով, գործիքներով և տեխնիկական ղեկավարությամբ ամեն կերպ օգնություն ցույց տալ կոլխոզնիկների ընտանիքների այն աշխատունակ անդամներին, որոնք վերաբնակության են գնում բնակության վայրում տնտեսությունների տեղավորմանը մասնակցելու համար:

6. Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմին իրավունք տալ (որտեղ հնարավոր չէ վերաբնակվող տնտեսությունները կցել գոյություն ունեցող կոլխոզներին) կտրելու մինչ այդ կոլխոզներին ամրացված հողերի մի մասը, ո-



րոնք նրանց կողմից չեն օգտագործվում և չեն կարող օգտագործվել մոտակա տարիների ընթացքում, այդ հողերը նոր կազմակերպվող կոլխոզներին հանձնելու համար, համապատասխան փոփոխություններ մտցնելով պետական ակտերի մեջ՝ ՍՍՌ Միության Ժողկոմսովետի հաստատմամբ:

## IX. ՎԵՐԱՄՇԱԿՈՂ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Պտուղների, խաղողի, շաքարի ճակնդեղի և ծխախոտի հումքի վերամշակումն ապահովելու նպատակով, պարտավորեցնել ՍՍՌՄ Սննդարդյունաբերության ժողկոմատին և Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին՝ 1941—1944 թվականների ընթացքում իրականացնել հետևյալ ձեռնարկումները.

### Պտղավերամշակման արդյունաբերության ասպարիզում

1. Սկսել Հոկտեմբերյանի կոնսերվի գործարանի կառուցումը՝ տարեկան 16 միլիոն պայմանական տուփ կոնսերվի արտադրական կարողությամբ, նրա առաջին հերթը շահագործման հանձնելով 1942 թվի երրորդ եռամսյակում:

2. *Երևանի Կոնսերվի գործարանում աշխատանքի սեզոնը երկարացնելու և թարմ պտուղների պահպանման նպատակով*, 1941—1942 *թվականներին այդ գործարանին կից կառուցել սառցարան, միաժամանակ* 700 *տոննա պտուղներ պահելու կարողությամբ, և վերակառուցել հյութերի ու մրգի կոնսերվների մշակման ցեխերը*:

3. 1941—44 *թվականների ընթացքում կառուցել և շահագործման հանձնել կոնսերվի* 4 *մանր գործարան՝ տարեկան* 6 *միլիոն պայմանական տուփ կոնսերվի ընդհանուր արտադրական կարողությամբ*:

4. *Կառուցել փաթեթման* 4 *բազա, կորիզավոր պտուղների և խաղողի փաթեթման համար*:

5. *Ընդարձակել և վերակառուցել մրգի կոնսերվի գործարանները— ա) Մեղրինը՝ տարեկան* 1,5 *միլիոն պայմանական տուփ կոնսերվից հասցնելով մինչև* 4 *միլիոն տուփի, բ) Այրումինը՝* 0,72 *միլիոն պայմանական տուփից մինչև* 5 *միլիոն տուփի*:

6. *Պարտավորեցնել ՍՍՌՄ Սննդարդյունաբերության ժողկոմատին՝* 1941—1944 *թվականներին Հայկական ՍՍՌ-ում նախատեսել ապակե տարայի գործարանի կառու-*



*ցումը՝ տարեկան* 50 *միլիոն կոնսերվի տուփի արտադրական կարողությամբ*:

7. *Պտղա-բանջարեղենային կոնսերվների արտադրությունը* 1944 *թվին հասցնել մինչև* 55 *միլիոն պայմանական տուփի*:

8. *Հայաստանում ՍՍՌՄ Սննդարդժողկոմատի կոնսերվի արդյունաբերության մեջ կատարվելիք կապիտալ ներդրումների ծավալը* 1941—1944 *թվականների համար սահմանել* 35 *միլիոն ռուբլի, այդ թվում՝* 1941 *թվին՝* 12 *միլիոն ռուբլի*, 1942 *թվին՝* 11 *միլիոն ռուբլի*, 1943 *թվին՝* 7 *միլիոն ռուբլի*, 1944 *թվին* 5 *միլիոն ռուբլի*:

9. *Պարտավորեցնել ՍՍՌՄ Սննդարդժողկոմատին՝ ի լրացումն* 1940 *թվի հաստատված պլանի՝ Գլավկոնսերվին բաց թողնել մեկ միլիոն ռուբլի՝* 1941—1944 *թվականներին Հայկական ՍՍՌ-ում կոնսերվի ձեռնարկությունների նշված շինարարությունը նախապատրաստելու համար*:

Գինեգործության արդյունաբերության ասպարեզում

10. *Խաղողի այգիների տարածության աճման և խաղողի բերքատվության բարձրացման կապակցությամբ խաղողի գինիների արտադրությունն ավելացնել*, 1944 *թվին հասցնելով հետևյալ չափերին*.

| Գինիների անունները | 1939 թ. | 1944 թ. |
|---|---|---|
| Ընդամենը գինիներ . . . | 1.011 հազ. դկլ. | 2.000 հազ. դկլ. |
| Այդ թվում | | |
| ա) ուժեղացված և դեսերտային | 770 „ „ | 1525 „ „ |
| որոնցից՝ մարկայավոր . . . . | — „ „ | 400 „ „ |
| բ) „Խերես“ տիպի գինիներ . . | 3,5 „ „ | 125 „ „ |
| գ) կոնյակի արտադրությունը . | 75 „ „ | 375 „ „ |



11. Գինեգործական և կոնյակի արտադրությունը զարգացնելու և բարձրորակ գինիների ու կոնյակների արտադրությունն ավելացնելու նպատակով, 1941—1944 թվականներին Հայկական ՍՍՌ-ում Սննդարդժողկոմատի սիստեմի գծով կառուցել.

ա) չորս գինեգործարան՝ 1.400 հազ. դկլ. գինու ընդհանուր արտադրական կարողությամբ.

բ) ինն սկզբնական գինեգործական վերամշակող կետեր՝ 1.175 հազ. դկլ. ընդհանուր կարողությամբ.

գ) կոնյակի սպիրտի արտադրության երկու գործարան՝ տարեկան 120 հազ. դկլ. ջրազուրկ սպիրտի ընդհանուր կարողությամբ.

դ) կոնյակների կենտրոնական պահեստարան Երևան քաղաքում՝ 400 հազ. դկլ. տարողությամբ:

12. 1942 թվի երրորդ եռամսյակում ավարտել և շահագործման հանձնել Աշտարակի «Խերես» տիպի գինիների գործարանը՝ 600 հազ. դկլ. կարողությամբ:

13. 1941 թվին ավարտել նկուղային շենքի կառուցումը Երևանի գինեգործարանին կից՝ 700 հազար դկլ. տարողությամբ, վե-

րակառուցել ու ընդարձակել Երևանի գինեգործարանը և կառուցել շշերի մեջ լցնելու ցեխ՝ տարեկան 700 հազ. դկլ. կարողությամբ:

14. Ընդարձակել և վերակառուցել Ղամարլուի գինեգործարանը, կոնյակի սպիրտի արտադրության նրա կարողությունը հասցնելով մինչև 150 հազ. դեկալիտրի՝ 1940 թվին եղած 66 հազարի փոխարեն, և կառուցել նկուղ՝ 400 հազ. դկլ. տարողությամբ:

15. Ընդարձակել Ղամարլուի շրջանում եղած վերամշակման երկու կետերը և կառուցել խմորման նկուղներ 350 հազ. դկլ. տարողությամբ:

16. Հայկական ՍՍՌ գինեգործական արդյունաբերությունն ապակե տարայով ապահովելու համար, 1941—42 թվականներին կառուցել ապակու գործարան՝ տարեկան 8 միլիոն շշի արտադրական կարողությամբ:

17. Հայկական ՍՍՌ Սննդարդյունաբերության ժողկոմատի գինեգործական արդյունաբերության մեջ կատարվելիք կապի-



տալ ներդրումների ծավալը 1941—44 թվականների համար սահմանել 55 միլիոն ռուբլի, այդ թվում՝ 1941 թվին— 11 միլիոն ռուբլի, 1942 թվին— 12 միլիոն ռուբլի, 1943 թվին— 15 միլիոն ռուբլի և 1944 թվին— 17 միլիոն ռուբլի:

18. Գինեգործական արդյունաբերության գծով նշված շինարարությունը նախապատրաստելու համար, պարտավորեցնել ՍՍՌՄ Սննդարդյունաբերության ժողկոմատին՝ ի լրացումն 1940 թվին հաստատված պլանի Հայկական ՍՍՌ Սննդարդյունաբերության ժողկոմատին բաց թողնել մեկ միլիոն ռուբլի:

## Շաքարի արդյունաբերության ասպարիզում

19. Շաքարի ճակնդեղի վերամշակումն ապահովելու համար, Համամլուի շաքարի գործարանի կառուցումն սկսել 1940 թվին, այն հաշվով, որ գործարանը շահագործման հանձնվի 1942 թվին:

Աշխատանքներն սկսելու համար 1940 թվին բաց թողնել 1,5 միլիոն ռուբլի՝ ՍՍՌՄ Սննդարդյունաբերության ժողկոմատի կապիտալ շինարարության չօգտագործված լիմիտների հաշվին:

### Ծխախոտի հումքը վերամշակող արդյունաբերության ասպարեզում

20․ *Կառուցել երեք ֆերմենտացիոն գործարան՝ տարեկան* 4 *հազար տոննա ծխախոտի հումքի վերամշակման ընդհանուր կարողությամբ, և* 7 *ֆերմենտացիոն կամերաներ՝* 230 *տոննա տարողությամբ։*

*Պարտավորեցնել ՍՍՌՄ Պետպլանին և Մնթերքների մթերման ժողկոմատին՝* 1941—1944 *թվականների տարեկան ու եռամսյակային պլանների մեջ Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետի հայտերի համաձայն նախատեսել այս որոշումը կենսագործելու համար անհրաժեշտ նյութերի և սարքավորման ֆոնդեր։*

ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀ՝

Վ. ՄՈԼՈՏՈՎ

ՀԱՄԿ(Բ)Պ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՔԱՐՏՈՒՂԱՐ՝

Ի. ՍՏԱԼԻՆ



## ՌՈՒՄԻՆՈ-ԲՈՒԼՂԱՐԱԿԱՆ ԵՎ ՌՈՒՄԻՆՈ-ՀՈՒՆԳԱՐԱԿԱՆ ԲԱՆԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ

### *ՏԵՂԵԿԱՆՔ ՏՐԱՆՍԻԼՎԱՆԻԱՅԻ ԵՎ ԴՈԲՐՈՒՋԱՅԻ ՄԱՍԻՆ*

Նկված ռումինո-բուլղարական և ռումինո-հունգարական բանակցությունների կապակցությամբ բերում ենք տեղեկանք Տրանսիլվանիայի և Դոբրուջայի մասին, որոնք բանակցությունների օբեկտ են ծառայում։

1․ Հունգարական *տերիտորիալ պահանջների օբեկտ են հանդիսանում այն մարզերը, որոնք* 1920 *թվի Տրիանոնյան պայմանագրով Հունգարիայից անցան Ռումինիային և երբեմն նշվում են Տրանսիլվանիա կամ Սեմիգրադյե ընդհանուր անունով։ Հունգարիայից փաստորեն Ռումինիային անցան բուն* Տրանսիլվանիան, Բանատը, Կրիշանան *և* Մարամուրեշը 102,3 *հազար քառակուսի կիլոմետր ընդհանուր տարա-*

ծությամբ, որը զգալիորեն գերազանցում էր Հետտրիանոնյան Հունգարիայի բուն տերիտորիայից: Այս մարզերը գտնվում են, մեկ կողմից Կարպատյան լեռների, մյուս կողմից՝ Հարավսլավիայի, Հունգարիայի և ՍՍՌՄ-ի միջև:

Ազգաբնակչությունը— 5.813 հազար— բաղկացած է գերազանցորեն ռումիններից և հունգարներից (ըստ ռումինական պաշտոնական վիճակագրության, որը հիմնված է 1930 թվի մարդահամարի վրա, ռումինները մոտ 58 տոկոս են, հունգարները՝ 27 %, գերմանացիները հաշվվում են մոտ 10 %):

Վարչական տեսակետից բուն Տրանսիլվանիան (տարածությունը 62,2 հազար քառակուսի կիլոմետր, ազգաբնակչությունը 3. 414 հազար) բաժանվում է 16 գավառի. կարևորագույն քաղաքներն են՝ Կլուժ (110 հազար բնակիչ), Սիբիու (50 հազար բնակիչ): Բանատը (տարածությունը 18,7 հազար քառակուսի կիլոմետր, բնակչությունը 940 հազար) բաժանվում է 3 գավառի, խոշոր քաղաքներն են՝ Տեմեշվար (91,5 հազար բնակիչ), Լուգոժ, Ռեշիցա: Կրիշանան և Մարամուրեշը (տարածությունը՝ 21 հազար քառակուսի կիլոմետր, բնակչությու-



նը՝ 1.458 հազար) բաղկացած են 4 գավառներից. կարևորագույն քաղաքներն են՝ Օրադյա (82,5 հազար բնակիչ), Արադ (77 հազար բնակիչ), Սատու Մարե (ավելի քան 50 հազար բնակիչ):

Այս մարզերի տնտեսական նշանակությունը բացառիկ կարևոր է: Տրանսիլվանիայի, Բանատի, Կրիշանայի և Մարամուրեշի տերիտորիայում, որը կազմում է ամբողջ ռումինական տերիտորիայի մեկ երրորդ մասը, ապրում է երկրի ազգաբնակչության $^2/_5$ մասը: Հողը, բացառությամբ լեռնային բարձունքների, աչքի է ընկնում բարձր արգավանդությամբ: Շատ անտառներ կան, որոնք պատում են լեռնաշղթաներն ու նրանց ճյուղավորությունները: Անտառները զբաղեցնում են ամբողջ տարածության մեկ երրորդական մասից ավելին: Ազգաբնակչության հիմնական զբաղմունքը գյուղատնտեսությունն է և անտառատնտեսությունը: Դաշտավարությունից բացի զարգացած են այգեգործությունն ու խաղողագործությունը: Լեռնային բարձրադիր արոտավայրերի առատությունը նպաստում է անասունների բազմացմանը: Այս մարզերին է ընկնում ամբողջ Ռումինիայի դաշ-

տավարության և անասնապահության ավելի քան մեկ երրորդական մասը:

Տրանսիլվանիայի լեռներն առատորեն պարունակում են օգտակար հանածոներ՝ ածուխ, երկաթահանք, աղ և այլն, որոնց բազայի վրա ծագել է լեռնարդյունաբերությունը: Մեծ նշանակություն ունի գործարանային արդյունաբերությունը: Մեր թըված մարզերին է ընկնում Ռումինիայի արդյունաբերական արտադրանքի երկու հինգերորդական մասը, մասնավորապես՝ անտառային արդյունաբերության արտադրանքի 60 %-ը, մետաղաձուլման արդյունաբերության՝ մոտ 65%-ը, քերամիկական արդյունաբերության՝ 63 %-ը, կաշվի արդյունաբերության՝ 55 %-ը, ապակու՝ 73 %-ը, էլեքտրոտեխնիկական՝ 55 %-ը և այլն:

Տրանսիլվանիան առաջին անգամ հունգարական թագավորության իշխանության տակ է ընկել XI դարում: XVI դարի սկըզբին նա անցավ թյուրքական հովանավորության ներքո, իսկ XVII դարի վերջում դարձյալ վերադարձավ հունգարական տիրապետությանը: 1849 թվին նա միացվեց ավստրիական երկրին և 1867 թվից դարձյալ դարձավ հունգարական մարզ:



Բանատն իր անունը ստացել է 1718 թվին, երբ նա միացվեց ավստրիական երկրին: 1779 թվին նա անցավ Հունգարիային և 1848 թվին անջատվեց նրանից, իսկ 1860 թվին դարձյալ դարձավ Հունգարիայի բաղկացուցիչ մասը:

1918 թվի դեկտեմբերին, կենտրոնական տերությունների պարտության հետևանքով, ռումինական զորքերը մտան Տրանսիլվանիա: Տրանսիլվանիայի, Բուկովինայի և Հունգարական հարթավայրի արևելյան մասի ռումինական օկուպացիան վավերացվեց Տրիանոնի պայմանագրով, ըստ որի Բանատի արևմտյան մասն անցավ Հարավսլավիային, իսկ արևելյանը՝ Ռումինիային:

2. Բուլղարական տերիտորիալ պահանջների առարկան է կազմում Հարավային Դոբրուջան, մի մարզ, որ գտնվում է Ռումինիայի հարավ-արևելքում, Դանուբի և Սև ծովի միջև: Ամբողջ Դոբրուջայի տարածությունը 23·262 քառակուսի կիլոմետր է: Վարչական տեսակետից բաժանվում է 4 օկրուգի— Տուրչա, Կոնստանցա, Դուրոստոր և Կալիակրա: Ազգաբնակչության ազգային կազմը, որի ընդհանուր թիվը համնում է 884·755-ի, խիստ խայտաբղետ

է— բուլղարներ, ռումիններ, թյուրքեր, կա ռուսական ազգաբնակչություն (այն աղանդավորականների հետնորդները, որոնք Դոբրուջա են արտաքսվել Պետրոս I-ի ժամանակները, և այն զապորոժցիները, որոնք XVIII դարի վերջում գնացին Դանուբի ստորին հոսանքի կողմերը), ինչպես նաև թաթարներ, գերմանացիներ, հրեաներ և այլն: Կարևորագույն քաղաքները գտնվում են ծովի ափին և Դանուբի վրա: Կոնստանցան Ռումինիայի գլխավոր նավահանգիստն է. Մանգալիան, Բալչիկը ծովային նավահանգիստներ են. Սիլիստրան, Տուլչան նավահանգիստներ են Դանուբի վրա:

Ազգաբնակչության հիմնական զբաղմունքը դաշտավարությունն է, որին նպաստում է բացառիկ արգավանդ հողը: Զարգացած է անասնապահությունը և հատկապես ոչխարաբուծությունը:

Դոբրուջայի նշանակությունը ոչ միայն նրա բարեբեր հողի մեջ է, որը տալիս է ցորենի բարձր բերք, այլև նրա աշխարհագրական դիրքի մեջ: Այս նահանգին առանձին արժեք է տալիս սևծովյան Կոնստանցա նավահանգիստը:

Մինչև 1878 թիվը Դոբրուջան հանդիսանում էր Բուլղարիայի բաղկացուցիչ



մասը, իսկ Բուլղարիան ինքը գտնվում էր թյուրքական տիրապետության ներքո: 1878 թվին Բեռլինի պայմանագրով կազմվեց բուլղարական իշխանություն և ճանաչվեց Ռումինիայի անկախ գոյությունը, որին հանձնվեց Դոբրուջայի հյուսիսային մասը, այսինքն՝ այն տերիտորիան, որը գտնվում է այն գծից դեպի հյուսիս, որ սկսվում է Սիլիստրա ամրոցից դեպի արևելք և տարածվում է մինչև Սև ծով— այն կետը, որը գտնվում է Մանգալիայից հարավ (այս տերիտորիան կազմում է մոտ 15,5 հազար քառակուսի կիլոմետր):

Բալկանյան երկրորդ պատերազմում Բուլղարիայի կրած պարտությունից հետո նա ստիպված եղավ, համաձայն Բուխարեստի 1913 թվի պայմանագրի, Ռումինիային զիջել Դոբրուջայի մնացած մասը, այսինքն Հարավային Դոբրուջան (տարածությունը 7,7 հազար քառակուսի կիլոմետր, բնակչությունը 282 հազար), որը հանդիսանում է Բուլղարիայի շտեմարանը և բնակեցված է բացառապես բուլղարներով:

Առաջին իմպերիալիստական պատերազմի ժամանակ, 1916 թվին, Բուլղարիան, որը

պատերազմում էր Գերմանիայի և Ավստրո-Հունգարիայի կողմում, իրեն վերադարձրեց Հարավային Դոբրուջան: Սակայն Անտանտայի երկրների վերջնական հաղթանակից հետո դաշնակից տերությունների և Բուլղարիայի միջև 1919 թվին, Նեյում կնքված պայմանագիրը վերականգնեց 1913 թվի սահմանը: Այսպիսով, Հարավային Դոբրուջան դարձյալ միացվեց Ռումինիային:

Հարավային Դոբրուջան Ռումինիային միացվելուց հետո ենթարկվեց բռնի ռումինացման: Արմատական բուլղար բնակչությունը արտաքսվեց և նրա տեղը բնակեցին ժամանակին Մակեդոնիայից փախած ռումինները: Ռումինական կառավարությունը 1924 թվին էքսպրոպրիացիայի ենթարկեց գյուղացիական հողերի 1/3 մասը, որը հանձնվեց նոր կոլոնիստներին:

Գյուղացիական հողերի էքսպրոպրիացիայի վերաբերյալ օրենքի կիրառումը զինված դիմադրության հանդիպեց տեղական բուլղար ազգաբնակչության կողմից, որը



նրա դեմ ձեռնարկված ռազմական միջոցների հետևանքով ստիպված եղավ փախչել Դոբրուջայից:

Բուլղարիան քանիցս հարց է բարձրացրել Հարավային Դոբրուջայի վերաբերմամբ իր ունեցած իրավունքների մասին:

---

Պատասխանատու խմբագիր՝
Դ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



Սրբագրիչ՝ Հ. ԶՐԱՂԱՑՊԱՆՅԱՆ
Վ.Ֆ 8631
Պատվեր՝ 883, տիրաժ 7575
Հանձնված է արտադրության 18/IX 1940 թ.
Ստորագրված է տպագրության 23/IX 1940 թ.

---

Հայկական ՍՍՌ ժողկոմսովետին կից թերթերի և ամսագրերի տպարան, Երևան